## ԿՐԹԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ

# ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ



## ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

ԵՒ

## ՏԱՐՐԱԿԱՆ ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ

ՀԱՍՏԱՏԵԱԼ

Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. ՍԱՐԸԵԱՆ

Նախկին ՊԱՂՏԱՏԼԵԱՆ Տպարան

1897

ԿՐԹԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ

# ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ

## ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

ԵՒ

## ՏԱՐՐԱԿԱՆ ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ

ՀԱՍՏԱՏԵԱԼ

Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ





Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. ՍԱՐՐԵԱՆ
Նախկին ՊԱՂՏԱՏԼԵԱՆ Տպարան

1897

# ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

## 1.

## Առաջին սկզբունք բարոյական եւ կրօնական դաստիարակութեան

### 3 էն 5 տարեկան

*Փոյթ ու խնամք տղոց լաւ սովորութիւններ տանիլ տալու, անոնց սէրը շահելու եւ անոնց մէջ համակրութիւն եւ ներդաշնակութիւն պահպանելու։ — Լաւին ու յոռիին վրայ նախնական գաղափար մը։*

### 5 էն 7 տարեկան

*Շատ պարզ խօսակցութիւնք լաւին ու յոռիին տարբերութեանց, անոնց հետեւանաց, երկնաւոր Հօր պարգեւաց եւ բարի տղոց յատկութեանց վրայ, դասարանին ու զբօսանաց վարժութիւններուն հետ խառնուած։*

*Փոքրիկ աղօթք եւ բանաստեղծութիւնք՝ բացատրուած եւ ի բերան ուսած։ — Բարոյական պատմութիւնք բերանացի պատմուած եւ հարցմունք անոնց իմաստին ու նշանակութեան վրայ։*

*Մասնաւոր խնամք այն տղոց մասին՝ որոց վրայ թերութեան կամ մոլութեան մը սկզբնաւորութիւնը կը նշմարուի։*

## 2.

## Մայրենի լեզուի վարժութիւնք. — Գիր եւ ընթերցում

### 3 էն 5 տարեկան

*Առոգանութեան վարժութիւնք. — Խօսակցութիւնք եւ հարցմունք եւ յիշողութեան փոքրիկ հրահանգք (Երգ, Առակ, Վէպ) տղոց բառագիտութիւնն աւելցնելու եւ իրենց միտքը բացատրել վարժեցնելու նպատակաւ։ — Պատկերներու բացատրութիւնք։*

### 5 էն 7 տարեկան

*Նախորդ բաժանման հրահանգները կրկնել։*

*Առաջին վարժութիւնք գրի եւ ընթերցման։ (Արտասանուած խօսք մը բառերու, վանկերու եւ հնչմանց կամ գրերու զատել, եւ տրուած բառ մը կամ բառեր եւ յետոյ կարճ նախադասութիւններ գրել, կարճ խօսքեր կարդալ)։*

*Շատ կարճ ընթերցումներ, զորս վարժուհին կ'ընէ եւ տղայք կ'ունկնդրեն եւ յետոյ կը պատմեն։*

## 3.

## Իրագիտութիւն. ծանօթութիւնք պիտանի եւ ընտանի առարկայից վրայ. Առաջին գիտելիք բնական պատմութեան

### 3 էն 5 տարեկան

*Մարդկային մարմնոյն գլխաւոր մասանց, գաւառին գլխաւոր կենդանեաց,*

*սննդեան ծառայող կամ այլ աչքի առջեւ եղող բոյսերու (Պարտիզին ու ճամբուն ծառերն, ընտանի ծաղկունք, եւայլն) անուանք։*

*Սննդեան, հանդերձի, բնակութեան եւ աշխատութեան ծառայող պիտանի առարկայից անուանքն ու գործածութիւնը։ — Ծանօթութիւնք ու գիտողութիւնք ցերեկուան, գիշերուան եւ տեւողութեան (ժամ, օր, շաբաթ) վրայ. — Օրուան, նախընթաց եւ հետեւեալ աւուրց անունները։*

*Մտադրութիւն տաքի, ցուրտի, անձրեւի եւ գեղեցիկ օդի տարբերութեանց եւ գիտողութիւնք եղանակին ու անոր յատուկ զբաղմանց եւ բերքերուն վրայ։*

*Առաջին դաստիարակութիւն զգայարանաց, փոքր վարժութեանց միջոցաւ. — Որոշել եւ բաղդատել տալ տղոց՝ գոյներ, երանգներ, ձեւեր, երկայնութիւններ, ծանրութիւններ, բարեխառնութիւններ, ձայներ, հոտեր, համեր։*

**5 էն 7 տարեկան**

*Շատ տարրական ծանօթութիւնք մարդկային մարմնոյն վրայ։ — Առողջապահական փոքրիկ խրատք։ — Մանր բաղդատական ուսումն ծանօթ կենդանեաց, բուսոց, քարանց եւ մետաղաց։ — Մի քանի սննդական եւ ճարտարական բոյսեր, գործածական քարեր եւ մետաղներ։*

*Օդ եւ ջուր (շոգի, ամպ, անձրեւ, ձիւն, սառ եւայլն)։ — Օրերու եւ ամսոց անուանք։ — Եղանակք։*

*Այս ամէնը՝ փոյթ ունենալով առարկաները կամ անոնց պատկերները դնելու տղոց աչքին առջեւ ու ձեռաց մէջ եւ դրդելով զիրենք մանաւանդ՝ նայելու, դիտելու, բաղդատելու, հարցասիրելու եւ միտք պահելու։*

*Կարելի եղածին չափ պէտք է ջանալ իրագիտական դաս, գծագրութիւն, բարոյական եւ կրօնական գիտելիք, խաղ եւ երգ իրար միաւորել, մի եւ նոյն նիւթին կցելով զանոնք, որպէս զի տպաւորութեանց միութիւնը աւելի տեւական հետք մը թողու մանկանց մտքին ու սրտին մէջ։ Բաց աստի, պէտք է ջանալ իրագիտական դասերն եղանակաց յարմարցնել, որպէս զի անոնց նիւթը նոյն իսկ բնութենէն առնելով տղայք դիտելու, բաղդատելու եւ դատելու ունակութիւն ստանան։*

## 4.

## Հաշիւ

**3 էն 5 տարեկան**

*Ընտանեցնել մանուկները առաջին թուոց անուններուն. առարկայից միջոցաւ վարժեցնել զանոնք համրելու մինչեւ 10։ — Մտաւոր հաշիւ առաջին 10 թուոց վրայ։*

**5 էն 7 տարեկան**

*Ուսումն առաջին թուոց կոտորակաց (կէսին, քառորդին, մէկ երրորդին) բերանացի եւ գրաւոր։ — Չորս գործողութեանց գրաւոր եւ մտաւոր փոքրիկ վարժութիւնք թանձրացեալ թուոց վրայ։ — Չափի եւ կշռի գաղափար։*

## 5.

## Աշխարհագրական եւ պատմական խօսակցութիւնք

**3 էն 5 տարեկան**

*Թաղին եւ փողոցին անունը ծնողաց տան։ — Գաղափար հեռաւորութեան եւ*

*տեղեաց, յարաբերական դրից (դպրոցին եւ տան ու անոնց մասանց բաղդատութեան միջոցաւ)։ Ցամաք եւ ջուր. — Արեւ (Արեւելք եւ Արեւմուտք)։*

**5 էն 7 տարեկան**

*Ընտանեկան խօսակցութիւնք եւ նախնական փոքր վարժութիւնք՝ գտնել տալու համար տղոց իրենց փորձառութեան շրջանակին մէջ՝ երկրի մակերեւոյթին այլազան կերպարանքները (լեռ, ձոր, ծով, գետ, կղզի, եւայլն)։*

*Սրբազան եւ Ազգային պատմութենէն մանրավէպեր, զրոյցներ, կենսագրութիւնք (Վարժուհին կը պատմէ եւ յետոյ պատմել կու տայ տղայոց)։ — Այս նիւթոց յարմար պատկերներու բացատրութիւնք։*

## 6.

## Գծագրական վարժք

**3 էն 5 տարեկան**

*Քարետախտակի վրայ գծեր ու պարզ զուգորդութիւնք։ — Նմանողութիւնք գործածական առարկայից եւ երկրաչափական հաստատուն մարմնոց։*

**5 էն 7 տարեկան**

*Գծեր ու զուգորդութիւնք՝ քարետախտակի եւ թղթի վրայ։ — Քառանկիւնագիծ թղթի վրայ գծական փոքր ձեւերու գիծեր ընել։ Վարժուհւոյն՝ սեւ տախտակին վրայ շինած պարզ գծագրութեանց ընդօրինակութիւն։ Պարզագոյն առարկայից նմանողութիւնք։*

## 7.

## Ձեռագործական մարզանք

**3էն 5 տարեկան**

*Ֆրէօպէլեան հրահանգք եւ կազմութիւնք (ցողուններով, խորանարդներով, գաւազանիկներով, փայտիկներով, շրջանակներով)։ — Ծալելու, հիւսելու վարժութիւնք։*

**5 էն 7 տարեկան**

*Ծալել, հիւսել, քանըվայի կամ թղթի վրայ գունաւոր թղթով պարզ աշխատութիւնք։*

## 8.

## Երգ եւ մարզանք

**3 էն 5 տարեկան**

*Միաձայն պարզ երգեր։ — Ազատ խաղք, համաչափ շարժմունք եւ շրջանք։ — Առողջապահիկ խնամք։ — Խնամք մաքրութեան։*

**5 էն 7 տարեկան**

*Միաձայն պարզ երգեր։ — Ազատ խաղք, համաչափ շարժմունք եւ շրջանք։ — Առողջապահիկ խնամք։ — Խնամք մաքրութեան։*

# ՏԱՐՐԱԿԱՆ ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ

## ՖԻԶԻՔԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

### 1.

### Առողջապահութեան եւ մաքրութեան խնամք

**7 էն 9 տարեկան.** **9 էն 11 տարեկան.** **11 էն 13 տարեկան**

*Առաւօտուն ու կէս օրէ յետոյ վերադարձին տղոց առողջական վիճակին ու գըլխուն, երեսաց, ձեռաց եւ հանդերձից մաքրութեան քննութիւն. — Կատարեալ մաքրութիւն պահանջել. — Աղտոտներն ընտանեաց դարձնել՝ մաքրուած վերադառնալու համար. — Հիւանդ երեւցողներն ու մանաւանդ տարափոխիկ հիւանդութեանց եղանակին մէջ կասկածելի վիճակ ունեցողները տուն ղրկել. — Զբօսանաց եւ խաղուց տեղն հսկել իրենց վրայ՝ արգիլելու համար ինչ որ կրնայ վտանգել իրենց առողջութիւնը. — Գործնական խրատներ տալ թէ ընդհանուրին եւ թէ առանձին՝ սննդեան, հագուստի, կաց ու նիստի, քնոյ եւ հսկման, մարմնոյ եւ հանդերձից մաքրութեան, օդոյ ու բարեխառնութեան վերաբերեալ զգուշութեանց, մարզանաց եւ խաղուց մասին. — Մասնաւոր հոգածութիւն ունենալ տկարագոյններու համար.*

### 2.

### Մարմնամարզ

*(Պէտք է հետեւիլ ազգային վարժարանաց առողջապահութեան Հրահանգին, ինչպէս նաեւ այն յատուկ հրահանգաց որք կը գտնուին մարմնամարզական գրքերու մէջ, եւ որք կը տարբերին երկու սեռից համար).*

**7 էն 9 տարեկան**

*Նախապատրաստական վարժութիւնք. — Բազուկներու, սրունքներու, գլխոյ եւ իրանի շարժմունք եւ թեքմունք. — Ծանրոցի եւ ցուպի վարժութիւնք. — Վազք. — Ցարձք եւ շրջանք.*

**9 էն 11 տարեկան**

*Նախորդ վարժութեանց վրայ կ'աւելնան վարժութիւնք եւ փորձք սանդուղի, կապկապ չուանի, օղակներու, հաստատուն ձողի, զուգահեռական ձողերու, կախուած ձողի եւ տրապէզի.*

**11 էն 13 տարեկան**

*Նախորդ վարժութիւնք եւ փորձք. — Հորիզոնական գերան. — Մէկ ոտքի վըրայ հաւասարակշռութեան վարժութիւնք. — Բազկաց շարժմունք, քայլընթացի հետ զուգորդեալ. — Ցպով վարժութիւնք երկ երկու տղոց. — Վազք ու ոստում.*

### 3.

*(Մանչերու համար)*

**7 էն 9 տարեկան**

*Ձեռաց աջողակութիւնը զարգացնելու ծառայող ձեռական վարժութիւնք. —*

խաւաքարգի կտրատում. երկրաչափական հատատանոց ձեւով խաւաքարտներ կտրել ու փակցնել ։

Կաղապարգործութիւն. — Զանազան գոյներով շիւղեր կցել ։ Կաւապատկեր (modelage). — Երկրաչափական հաստատուններու եւ շատ պարզ առարկաններու նմանութիւնք ։

**9էն 11 տարեկան**

Խաւաքարտեայ առարկաներ շինել եւ զրուագել գունաւոր թղթով եւ ներկուած գծագրութիւններով ։

Երկաթի թելով փոքրիկ ցանցակերպ գործուածք ։

Երկաթի թելէ ու փայտէ խառն գործուածք. վանդակք. — Կաւապատկեր. — Ճարտարապետական պարզ զարդեր. — Շատ գործածական գործեաց վրայ ծանօթութիւնք ։

**11էն 13 տարեկան**

Գծագրութեան եւ կաւապատկերի զուգորդեալ վարժութիւնք ։ (Շինուելիք առարկայից չափերով հանդերձ ուրուագիծն յօրինել եւ յետոյ այդ ուրուագծին համեմատ նոյն առարկայները կաւապատկերել, եւ փոխադարձաբար)։

Փայտի վրայ աշխատութեանց մէջ գործածուած գլխաւոր գործեաց ուսումն. — Աստիճանաւորեալ գործնական վարժութիւնք. — Փայտ ողորկել, սղոցել, կցել ։ Գամով կամ առանց գամի միացուցուած տուփեր. — Փայտի ճախարակ. խիստ պարզ առարկայներու բոլորշիացում ։

Երկաթագործութեան մէջ գործածուած գլխաւոր գործեաց ուսումն. վարժութիւնք խարտոցի, եղերահարթում, (ebarbage ou finitbage) զարբնեալ կամ ձուլածոյ անհարթ առարկայից ։

## 4.

## Ձեռական աշխատութիւնք

**7էն 9 տարեկան**

(Աղջկանց համար)

Գուլպայակերպ հիւսք (tricot). երիզ ։

Գործածութիւն քանըվայի եւ անոր ասեղին ։

Քանըվայի վրայ ուսում կարի տարերաց. — Շարկար, յետկար, չեղկար եւ խծիպ ։

Կտաւի վրայ վարժութիւն կարի սոյն տարերաց (Փոքր կտորներ. — Պէպէքի ճերմակեղէն)։

Ուսում թելգրի (մարզայ) ասեղին ։

**9էն 11 տարեկան**

Գուլպայակերպ հիւսք. — Թեզանիք. գուլպայ ։

Քանըվայի վրայ թելգիր. — Տառ եւ թուանիշ ։

Տարերք կարի. — Շարկար, յետկար, չեղկար, խծիպ, շուրջկար, թելտուկ (թէյէլ), խաչկար. — Վարժութիւնք պարզ, կրկնակ եւ վերամած (վրան դարձուած) կոր գծի ։

Ճարմանդակ (կոճակի ծակ), լարծակ եւ օղակ շինել. կոճակ եւ կեռկոճակ փակցնել. — Ժանեակ կարել. — Փոթփոթել ։

Զարդակարի վարժութիւնք. — Շղթայաշար կար, փուշփուշ կար, կապկար, գրաանգ (ֆէստոն), թելքաշ խծիկ, թուրք ցանցասեղ։

Կիրառութիւն պարզ եւ դիւրին կարի գործերու. — Ձեռաց սրբիչ, անձեռոց, թաշկինակ, գոգնոց, շապիկ. — Պէպէքի շապիկ եւ կիսաշրջազգեստ ձեւել կարել։

### 11 էն 13 տարեկան

Գուլպայակերպ հիւսք. — Կիսաձեռնոց, ձեռնոց, կիսաշրջազգեստ, բաճկոն։

Գուլպայակերպ հիւսկէններու կարկատում։

Կեռասեղ (քռօշէ) եւ ցանցահիւսք (ֆիլէ)։

Կտաւի վրայ թելցիր։

Կարի եւ զարդակարի տեսակներու վրայ վարժութիւնք եւ կիրառմունք։

Կարկտուք. — Կտոր ձգել. պատռուածքը կցել։

Ձեւ եւ կար ճերմակեղէնաց եւ դիւրին զգեստուց. — Լայնիկ (քամիզոլ), կիսաշրջազգեստ, անձեռոց, գոգնոց, անկողնոյ ասուիք, կնոջ եւ էրիկ մարդու շապիկ, տաբատ, չփակ, տղու զգեստք։

Ճերմակի վրայ պարզ զարդասեղի (պռօտըրի) վարժութիւնք։

---

# ԻՄԱՑԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

## 1.

## Ընթերցանութիւն

### 7 էն 9 տարեկան

Վարժութիւն ընթերցանութեան եւ առոգանութեան. (բառեր, կարճ խօսքեր, փոքրիկ հատուածներ). — Հարցմունք եւ բացատրութիւնք բառից նշանակութեան, խօսքերուն եւ հատուածներուն իմաստին վրայ. — Բերանացի զրուցել տալ հատուածներուն պարունակութիւնը։

### 9 էն 11 տարեկան

Ընթերցումն հրահանգիչ հատուածոց (բարոյական, նկարագրական, բանաստեղծական, պատմական, վիպական, տեղագրական, իրագիտական նիւթեր). — Խնամք ուղիղ, յստակ եւ բնական արտասանութեան. — Բացատրութիւնք բառից եւ իմաստից. — Վերլուծումն գաղափարաց. — Բերանացի ամփոփումն հատուածին։

### 11 էն 13 տարեկան

Ընթերցումն ծաղկաքաղ հատուածոց ազգային հեղինակաց (աշխարհաբար, բայց ինչ ինչ պարզ գրաբար հատուածներով խառն). — Արտայայտիչ ընթերցանութիւն. — Բացատրութիւնք բառից եւ իմաստից եւ անոնց գլխաւոր ձեւերուն (երբ պատահի). — Վերլուծումն հատուածին (գլխաւոր եւ երկրորդական գաղափարք. յատկագիծ հատուածին). — Ոտանաւոր հատուածոց առթիւ՝ բացատրութիւն տաղաչափութեան գլխաւոր կանոնաց. — Կենսագրական կարճ ծանօթութիւնք հատուածին հեղինակին վրայ։

## 2.

### Գիր

7 էն 9 տարեկան

*Գիր խոշոր, միջին ու նուրբ։*

9 էն 11 տարեկան

*Ընթացիկ գիր (մանր գիր եւ գլխագիր)։*

11 էն 13 տարեկան

*Ընթացիկ, բոլոր* (ronde) *եւ գոթիկ գիր։*

## 3.

### Աշխարհիկ հայ լեզու եւ սկզբունք գրաբար հայերէնի

7 էն 9 տարեկան

1. Քերականական նախագիտելիք. — *Բերանացի փոքրիկ ծանօթութիւնք. — Տղուն յայտնի բառերով տրուած օրինակներու վրայ՝ բառից գլխաւոր տեսակները (գոյական, ածական, բայ, դերանուն) եւ անոնց ինչ ինչ հանգամանքները (թիւ եւ դէմք, ածանցում եւ բարդ) ուսուցանել։ — Գաղափար մը պարզ նախադասութեան եւ բային ենթակային հետ համաձայնութեան վրայ։*

2. Լեզուի եւ քերականութեան վարժութիւնք. —— *Ընթերցանութեան գրքին կարդացած հատուածներուն վրայ ինչ ինչ փոքր հարցմունք բառից գործածութեան, ուղղագրութեան, տեսակին, կազմութեան եւ նախադասութեան մը գլխաւոր մասերուն վրայ։*

*Ընթացք մտամարզական եւ կրթական գրաւոր ու բերանացի հրահանգաց. — Որոշել եւ գտնել անձնաւոր եւ անանձն, կենդանի ու անկենդան, նիւթական ու աննիւթական իրաց անուններ, առարկայից թիւը, սեռը, յատկութիւնքը, գործողութիւնքն ու վիճակները նշանակող բառեր ու ձեւեր. — Ընել գոյականի եւ ածականի, բայի եւ խնդրոյ, յատկացուցչի եւ յատկացելոյ, ենթակայի եւ ստորոգելւոյ զուգադրութիւններ, գոյականի եւ դերանուան փոխադրութիւններ, պարզ ածանցումներ եւ բարդումներ, ձեւի փոփոխութիւններ, խօսքի լրացումներ (գործնականապէս, տրուած օրինակներու հետեւողութեամբ)։*

3. Հրահանգք յիշողութեան եւ արտասանութեան. — *Ընթերցանութեան գրքին մէջէն ուսումն ի բերան եւ արտասանութիւն պարզ փոքրիկ բանաստեղծութեանց, յետ բացատրութեան։*

*(Պահանջել աշակերտէն ազատօրէն պատմել կամ յառաջ բերել արտասանուած կտորին իմաստները. — Վերլուծական հարցմունք։)*

4. Ուղղագրութիւն. — *Ընդօրինակել ընթերցանութեան գրքին սերտելի հատուածը։*

*Յիշողութեամբ արտագրել ի բերան ուսեալ հատուածը։*

*Աստիճանեալ զրուցագրութիւնք սովորական եւ կանոնական ուղղագրութեան. (կարճ խօսքեր)։*

5. Բարձրաձայն ընթերցումն ուսուցչին կողմէ. — *Շաբաթը երկու անգամ՝ տղայքը հետաքրքրող հատուածի մը. — Խօսակցութիւնք եւ բացատրութիւնք։*

6. Շարադրութիւն. — *Բերանացի նմանողութիւն կարդացուած եւ բացատրուած փոքր խօսքերու։*

*Սեւ տախտակի, քարետախտակի կամ տետրակի վրայ նմանողաբար յառաջ բերել կարդացուած եւ բացատրուած մէկ քանի խօսքեր։*

*Շարադրութեան առաջին վարժութիւնք. — Կարճ նախադասութիւնք, յետ նախապատրաստութեան. (ծանօթ եւ ընտանի առարկայից, անձանց եւ կենդանեաց վրայ փոքրիկ դիտողութիւնք եւ նկարագրութիւնք, փոքրիկ պատմութիւնք)։*

**Դէն 11 տարեկան**

1. Քերականութիւն. — *Աշխարհաբար հայերէնի վրայ քերականութեան դասեր, օրինակներով բացատրուած. — Ա. Ուսումն բառից (մասունք բանի, հոլովմունք եւ խոնարհմունք, ածանցում եւ բարդում, կիտադրութիւն). Բ. Ուսումն նախադասութեանց (նախադասութեան էական եւ լրացուցիչ մասունք, խնդիրք եւ խնդրառութք. կարգ եւ համաձայնութիւն նախադասութեան մասանց. կապակցութիւն նախադասութեանց)։*

2. Լեզուի եւ քերականական վարժութիւնք. — *Ընթերցանութեան գրքին բնագրաց վրայ հարցմունք բառից առմանց, տեսակներուն, քերականական ձեւոց, կազմութեան առնչութեանց կամ պաշտօններուն եւ նախադասութեանց մասանց ու կապակցութեան վրայ։*

*Ընթացք մտամարզական եւ կրթական գրաւոր հրահանգաց (բերանացի վարժութեամբք խառն). — Փոխադարձ ուսումն գաղափարաց եւ բառից, մտածման եւ բացատրութեան. — Գիւտի վարժութիւնք. — Բառից նշանակութեանց սահմանում, նմանութիւն եւ հակառակութիւն (համանիշք եւ հականիշք). — Բառակազմութիւն (ածանցք, բարդք, բառից ընտանիք). — Համաձայնութիւն, կապակցութիւն եւ լրացում խօսքի մասերու. — Հոլովմանց, խոնարհմանց, դերանուանց, մակբայից եւ շաղկապաց կիրառութիւն եւ ձեւափոխութիւնք. — Խօսքին հաստատական, ժխտական, պատմական, հարցական, հրամայական, արգելական, տարակուսական, թէական, ըղձական ձեւերը։*

3. Վերլուծական վարժութիւնք. — *Տրուած խօսքի մը վրայ բերանացի, մերթ եւս գրաւոր, քերականական վերլուծութիւն։*

4. Հրահանգք յիշողութեան եւ արտասանութեան. — *Ուսումն ի բերան եւ արտասանութիւն առակաց, մանր քերթուածոց, արձակ հատուածոց, յետ բացատրութեան։*

*Արտասանուած հատուածը բերանացի պարզել ու բացատրել։*

5. Ուղղագրութիւն. — *Ընդօրինակել ընթերցանութեան գրքին սերտելի հատուածը։*

*Յիշողութեամբ արտագրել ի բերան ուսեալ հատուածը։*

*Բացատրեալ գրուցագրութիւն մաքուր աշխարհաբար հատուածոց։*

*6. Բարձրաձայն ընթերցում ուսուցչին կողմէ՝ շաբաթը երկու անգամ՝ ընտիր հեղինակներէ առնուած պարզ եւ շահեկան հատուածոց. — Խօսակցութիւնք եւ բացատրութիւնք։*

7. Շարադրութիւն. — *Բերանացի, նմանօղաբար յառաջ բերել ուսուցչէն պատմուած գրոյց մը։*

*Փոքր շարադրութիւնք, յետ նախապատրաստութեան. (խրատական նիւթեր, պարզ նկարագրութիւնք, կարճ պատմութիւնք)։*

## 11էն 13 տարեկան

1. Քերականութիւն եւ ոճ. — *Ուսումն պարբերութեանց. գլխաւոր եւ լրացուցիչ նախադասութիւնք. շարադասութեան ձեւք (աշխարհաբար)։*

*Տարրական քերականութիւն գրաբար հայերէնի (գրաբարի յատուկ ձեւք. — Անուանց եւ դերանուանց հոլովմունք, խոնարհութիւնք բայից, նախադասութիւնք եւ անոնց գլխաւոր գործածութիւնք, ուրիշ անփոփոխ բառք, կարգ եւ համաձայնութիւն խօսքին մասանց)։*

*Բառակազմութիւն (ուսումն ածանցական մասնկանց եւ ածանցման ու բարդման օրինաց)։*

*Գաղափար բառից եւ իմաստից ձեւերու, ոճոյ յատկութեանց, շարադրութեան կանոնաց եւ գրական սեռերու վրայ։*

2. Քերականութեան եւ ոճոյ վարժութիւնք. — *Ընթերցանութեան գրքին բնագրաց վրայ քերականութեան, ոճոյ եւ շարադրութեան տեսակէտներով դիտողութիւնք եւ վերլուծութիւնք։*

*Պարզ գրաբար ծաղկաքաղ հատուածոց բերանացի յաշխարհաբար թարգմանութիւն (երբեմն գրաւոր)։*

*Գործնական գրաւոր հրահանգներ գրաբար քերականութեան կանոնաց կիրառման։*

*Ընթացք մտամարզական եւ կրթական հրահանգաց. — Գիւտի, դատողութեան եւ իմաստասիրութեան, բառից ընտրութեան ու գործածութեան, բացատրութեան եղանակաց, շարադրութեան ու ոճոյ ձեւերու այլազան վարժութիւնք։*

3. Վերլուծական վարժութիւնք. — *Տրուած խօսքի մը վրայ բերանացի, մերթ եւս գրաւոր, տրամաբանական վերլուծութիւն։*

*Քերականական վերլուծութիւն գրաբար պարբերութեան մը։*

4. Հրահանգք յիշողութեան եւ արտասանութեան. — *Արտայայտիչ արտասանութիւն, մաքուր աշխարհաբարով եւ մերթ պարզ գրաբարով գրուած, արձակ եւ ոտանաւոր հատընտիր հատուածոց, տրամախօսութեանց եւայլն, յետ բացատրութեան։*

*Արտասանուած հատուածը բերանացի պարզել ու բացայայտել։*

5. Ուղղագրութիւն. — *Ճշդութեամբ արտագրել ի բերան ուսեալ հատուածը։*

*Բացատրեալ գրուցագրութիւն ընտիր հեղինակներէ առնուած աշխարհաբար եւ մերթ պարզ գրաբար հատուածոց։*

6. *Ուսուցչին կողմէն, մերթ աշակերտաց գործակցութեամբ, ընթերցմունք գրական, թատերական, պատմական ընտիր հատուածոց։ — Խօսակցութիւնք, գրական դիտողութիւնք եւ բացատրութիւնք։*

7. Շարադրութիւն. — *Բերանացի համառօտութիւն ընթերցմանց, դասուց, շրջագայութեանց, գիտական փորձերու, եւայլն։*

*Աշակերտին կողմանէ կենդանի բարբառով վերլուծութիւն հմտալի կամ գրական կտորի մը՝ որ կանխաւ տրուած ըլլայ իրեն ուսումնասիրելու։*

*Ոտանաւոր գրուածներ արձակի վերածել ։*

*Գրաւոր համարատուութիւն դասուց եւ ընթերցմանց ։*

*Շարադրութիւնք, յետ նախապատրաստութեան (եւ մերթ աշակերտները թողլով իրենք իրենց), այլազան պարզ նիւթոց վրայ ։ (պատմութիւնք, նամակք, պարզ նկարագրութիւնք, տպաւորութիւնք, առածներու կամ բարոյական վճռոց բացատրութիւնք)։*

## 4.

## Տարերք Օսմաներէն լեզուի

### 9 էն 11 տարեկան

Գիր եւ ընթերցում. — *Պարզ թուրքերէնով գրուած ընթերցանութեան՝ գրքի մը հատուածները լաւ առոգանութեամբ կարդալ, թարգմանել, բացատրել, ընդօրինակել եւ անոնց մէջէն բառեր ու պարբերութիւններ եւ տակաւ ամբողջ հատուածներ գրուցագրել ։*

*Խօսակցութիւն թուրքերէն լեզուաւ՝ թարգմանուած ու բացատրուած հատուածոց վրայ (վերլուծական հարցմունք եւ պատասխանիք)։*

*Թուրքերէնի քերականական ձեւոց ուսումը, գործնական հրահանգներով ։*

### 11 էն 13 տարեկան

*Ընթերցանութիւն, ընդօրինակութիւն, թարգմանութիւն եւ գրուցագրութիւն տպեալ եւ ձեռագիր պաշտօնական գրութեանց (աէնէտ, արզուհալ, պայմանագիր, եւայլն), լրագրական հատուածոց եւ այլ գրուածոց ։*

*Բացատրութիւնք եւ խօսակցութիւն թուրքերէն լեզուաւ՝ նոյն գրութեանց վրայ ։ (Պէտք է պահանջել որ աշակերտք պատրաստուին բերանացի բացատրել, պատմել կամ ամփոփել ընթերցուածոց իմաստները, բայց կարլի հետեւելով հեղինակին գործածած բացատրութեանց)։*

*Ի բերան ուսումն ընտիր հատուածոց. — Իրենց ուսեալ հատուածը յիշողութեամբ արտագրել ։*

*Արաբերէն եւ Պարսկերէն լեզուաց օսմաներէնի մէջ գործածական ձեւոց ու կանոնաց վրայ քերականական դասք հրահանգներով ։*

*Բառագիտական եւ բառակազմական վարժութիւնք ։*

*Պիտանի գործածական գրութեանց վարժութիւն ։*

*Զանազան նիւթոց վրայ պարզ շարադրութիւնք ։*

## 5.

## Տարերք Գաղղիերէն լեզուի

*(Թաղերուն համար կամաւոր)*

### 9 էն 11 տարեկան

Գիր եւ ընթերցանութիւն. — *Բառերու նշանակութիւններ, առարկայից անուններ, մանր խօսքեր ։ Անոնց ուղղագրութիւնք ։*

*Առաջին ընթացք հայերէնէ ի գաղղիերէն ու փոխադարձ հրահանգաց, աստիճա-*

Նաքար գաղիերէն փոքրիկ նախադասութեանց կազմութեան վարժեցնելու եւ իբրեւ գործնական պարզ քերականութիւն մը՝ ուսուցանելու համար անուանց յոգնակիի եւ արական ածականաց իգականի կազմութիւնը, որոշիչ ածականները, դերանունները, գլխաւոր նախադասութիւնները, մակբայները եւ շաղկապները, օժանդակ եւ կանոնաւոր բայից խոնարհումը։

Թարգմանութիւն ի հայ աստիճանեալ պարզ հատուածոց։ Թարգմանուած հատուածոց վրայ վերլուծական պարզ հարցմունք եւ պատասխանիք՝ գաղիերէն լեզուով։ (Աշակերտք պիտի վարժին բնագրին մէջէն իրենց պատասխանները գտնելու եւ կազմելու)։

Ուսումն ի բերան կարճ եւ պարզ հատուածոց (արձակ եւ ոտանաւոր), յետ բացատրութեան ու թարգմանութեան։

Ընդօրինակութիւն թարգմանեալ, ուսեալ հատուածոց։

Փոքրիկ զրուցագրութիւն. — Ի բերան ուսեալ հատուածներ յիշողութեամբ արտագրել։

### 11 էն 13 տարեկան

Երկրորդ գործնական ընթացք գաղիերէն լեզուի եւ քերականութեան, հայերէնէ ի գաղիերէն եւ փոխադարձ հրահանգներով, ինչպէս եւ զուտ գաղիերէն վարժութիւններով, շարունակելու համար մեթոտիկ կերպով սովրեցնել գաղիերէն խօսքին կազմութիւնը եւ ընթացիկ լեզուին բացատրութիւններն ու ձեւերը, միանգամայն աւանդելով լեզուին տարրական քերականութիւնը, այն է բառագիտութիւնը (տասն մասունք բանի, խոնարհմունք կանոնաւոր եւ անկանոն բայից, կազմութիւն ժամանակաց, ածանցում եւ բարդում) եւ համաձայնութեան կարեւորագոյն կանոնները։

Խօսակցութեան մէջ գործածական ձեւոց վրայ մասնաւոր վարժութիւնք։

Գրաւոր եւ բերանացի թարգմանութիւն եւ բացատրութիւն գաղիերէն հատուածոց. (աշակերտէն պիտի պահանջուի բերանացի՝ հայերէն արտագրեալ թարգմանութեան վրայէն հատուածն ի գաղիերէն վերածել, հատուածին իմաստից վրայ եղած վերլուծական հարցումներու գաղիերէն պատասխանել, բնագրին բացատրութեանց հետեւելով՝ պարունակութիւնը պատմել կամ ամփոփել նոյն լեզուով)։

Թարգմանութեան գրքին սերտելի հատուածն ընդօրինակել. — Զրուցագրել նոյնին մէկ մասը։

Փոքրիկ շարադրութիւնք՝ մերթ հետեւողութեամբ ուսուցչէն ընթերցուած ու բացատրուած հատուածի մը, եւ մերթ ուսուցչէն տրուած նիւթի մը վրայ (Նամակ, զրոյց, բացատրեալ առած)։

Ուսումն ի բերան հատընտիր պարզ հատուածոց. (Բանաստեղծութիւն, առակ, տրամախօսութիւն)։ Ի բերան ուսեալ հատուածը յիշողութեամբ արտագրել։

## 6.

## Պատմութիւն

### 7 էն 9 տարեկան

Պարզ զրոյցք եւ խօսակցութիւնք ազգային եւ Օսմանեան ընդհանուր պատմութեան երեւելի անձանց ու դիպաց վրայ։ (Առանց դասագրքի, բայց ուսուցիչը ցոյց կուտայ աշակերտաց նիւթին վերաբերեալ պատկերները)։

### 9էն 11 տարեկան

Տարրական ընթացք ազգային պատմութեան։ (Սկիզբէն մինչեւ 5րդ դար Ք. Ե.)։
Համառօտ պատմութիւն Օսմանեան, սկիզբէն մինչեւ ցՍուլթան Սէլիմ Գ. (1788)։

### 11էն 13 տարեկան

Տարրական ընթացք ազգային պատմութեան (Ք. Ե. Երդ. դարէն մինչեւ մեր օրերը։

Համառօտ տեսութիւն ընդհանուր պատմութեան։ — Հնութենէն՝ Եգիպտոս, Ասորեստան, Պարսկաստան, Յունաստան եւ Հռոմ։ — Միջին դարէն՝ Սառբին Կայսրութիւն, Արաբացիք, Լատինք եւ Գերմանական տէրութիւնք։ — Նոր ժամանակներէն՝ աշխարհագրական գիւտք, Եւրոպական պետութիւնք, Արեւմտեան ժողովրդոց գիտական, գրական, ճարտարական եւ գեղաճարտարական յառաջդիմութիւնք։ Ընդհանուր վերատեսութիւն։

## 7.

## Աշխարհագրութիւն Եւրոպական եւ Ասիական Տաճկաստանի եւ ընդհանուր գիտելիք ի վերայ այլ մասանց երկրի

### 7 էն 9 տարեկան

Նախապատրաստութիւն աշխարհագրական ուսման դէմյանդիմանական եւ նկարագրական մեթոդով։

Ընդհանուր գիտելիք. — Երկրիս կողմերը որոշել արեւուն դիրքին նայելով։ — Երկրիս ձեւն եւ շարժումները։ Երկրագունտ։ Արեւու եւ լուսնոյ վրայ տարրական ծանօթութիւնք։ — Տիւ եւ գիշեր. եղանակները. — Մթնոլորտ եւ մթնոլորտային գլխաւոր երեւոյթք (ամպ, անձրեւ, ձիւն, կարկուտ, հով, փոթորիկ)։ — Ցամաքը եւ ջուրերը։ — Ցամաքի եւ ջրոյ այլ եւ այլ մասունք եւ կերպարանք։ Աշխարհագրական եզերց բացատրութիւն. (ծով, ծովեզր, ծոց, նաւահանգիստ, հրուանդան, կղզի, թերակղզի, նեղուց, պարանոց, խութ. — Լեռ, լեռնաշղթայ, դաշտ, լեռնադաշտ, հովիտ, հրաբուխ. — Գետ, գետակ, գետաբերան, գետեզր, ջրանց, լիճ, եւայլն), միշտ աշակերտին տեսած առարկայներէն մեկնելով եւ հանգիտական եղանակաւ։

Սեւ տախտակի վրայ գծել ծովու ու ցամաքի մասերը եւ կերպարանքները ներկայացնող աշխարհագրական պատկերներն եւ ձեւերը։ — Ընդօրինակութիւն քարետախտակի վրայ։ — Ծանօթութիւն քարտէսի։

Տեղական աշխարհագրութիւն. — Դպրոց, փողոց, եկեղեցի, թաղ. — Շրջակայք, մերձաւոր թաղք կամ գիւղք, ճանապարհք։ — Խօսակցութիւնք ծննդավայրին վրայ։

Գաղափար քարտէսի. — Սեւ տախտակի վրայ գծել դասարանին, դպրոցին, թաղին յատակագծերը։ Ընդօրինակութիւն քարետախտակի, տետրակի վրայ։

Ընդհանուր աշխարհագրութիւն. — Երկրի գլխաւոր բաժանումները. մեծ ցամաքներն եւ մեծ ովկիանոսները եւ անոնց գլխաւոր ստորաբաժանումները։

(Ընդհանուր գիտելիքն եւ տեղական աշխարհագրութեան ծանօթութիւնները պէտք է զուգընթացաբար՝ աւանդել)։

### 9էն 11 տարեկան

Տարրական տիեզերագրութիւն. — *Աստղերը. — Արեւ, Երկիր եւ Լուսին. — Թաւալմունք եւ շրջանք. — Երկրագունտ. առանցք, բեւեռ; հասարակած, միջօրէական, կիսագունտք եւ գօտիք. — Տեղւոյ մը երկայնութեան եւ լայնութեան աստիճանները գտնել երկրագնտին վրայ.*

Տեղական աշխարհագրութիւն. — *Գաւառին բնական նկարագիրը. գլխաւոր տեղիք ու կեդրոն. բնակիչք եւ արուեստք. — Տեղական աւանդութիւնք.*

Ընդհանուր աշխարհագրութիւն. — *Մեծ բաժանմունք. Երկրի հինգ գլխաւոր մասունք. — Իւրաքանչիւրին դիրքն ու սահմանները. — Մակերեւոյթն ու ծովեզերքները. (մեծ լեռնաշղթայք, մեծ գետեր, մեծ ծովեր, կարեւորագոյն նեղուցներ, ծոցեր եւ գլուխներ. — Կարեւոր յատուկ կենդանիք, բոյսք եւ բերք. — Կլիմայք, Ազգք, Տէրութիւնք եւ մայրաքաղաքք. — Եւրոպական եւ Ասիական Տաճկաստան քիչ մ'աւելի ընդարձակ.*

*Քարտիսագծութեան վարժութիւնք սեւ տախտակի ու քարետախտակի վրայ՝ դասի ատեն, ու տետրակի վրայ՝ իբրեւ պարտականութիւն — Մտաւոր ուղեւորութիւնք.*

### 11էն 13 տարեկան

*Վերատեսութիւն եւ ընդլայնում Եւրոպական եւ Ասիական Տաճկաստանի աշխարհագրութեան. — Բնական նկարագիր, սահմանք, ծովեզերք, լերինք, գետք եւ լիճք, կենդանիք, բոյսք եւ հանքք. — Քաղաքական աշխարհագրութիւն. — Նահանգային բաժանմունք, մայրաքաղաք եւ գլխաւոր քաղաքք եւ նշանաւոր տեղիք եւ շէնք. — Ազգաբնակութիւն, ցեղք եւ կրօնք. — Քաղաքակրթութիւն, դպրոցք, երկրագործութիւն, արուեստք եւ գեղարուեստք, վաճառականութիւն, ճանապարհք եւ միջոցք հաղորդակցութեան. — Բնագաւառին վրայ առանձին մանրամասնութիւնք, բնագրական, վարչական, պատմական եւ աւանդական.*

*Ափրիկէի մէջ Օսմանեան երկիրք.*

*Եւրոպայի եւ Ասիոյ միւս աշխարհաց, որպէս եւ Ափրիկէի, Ամերիկայի եւ Ովկիանիայի աշխարհաց բնական ու քաղաքական աշխարհագրութիւնը համառօտ.*

*Քարտիսագծութեան վարժութիւնք.*

*Մտաւոր ուղեւորութիւնք.*

*Միջին դասընթացք, տիեզերագրական գիտելիք վերատեսել եւ ընդլայնել. — Արեգակնային դրութիւն եւ գլխաւոր մոլորակք. — Երկիր եւ Արեւ. — Լուսին եւ խաւարմունք. — Աստեղք եւ համաստեղութիւնք, երկրաբանական երեւոյթք, հրաբուխք եւ երկրաշարժք.*

*Ընդհանուր վերատեսութիւն.*

## 8.

## Օրէնգիտական ու տնտեսագիտական ծանօթութիւնք

### 7էն 9 տարեկան

*Ընթերցմանց ատեն բացատրութիւն ինչ ինչ բառից որ ընկերային կեանքի գաղափար մը կը յայտնեն, զոր օրինակ՝ Պետութիւն, Ազգ. Վարչութիւն, Օրէնք, դատարան, կեդրոն, գաւառ, տուրք եւայլն.*

Նոյնպէս բացատրութիւն այն բառից որ տնտեսական կեանքի երեւոյթ մը կը յայտնեն. հարստութիւն, ճարտարութիւն, փոխանակութիւն, առեւտուր, դրամագլուխ, թոշակ, դրամ եւայլն։

### 9էն 11 տարեկան

Պարզ ծանօթութիւնք Օսմանեան Պետութեան կազմակերպութեան վրայ. — Վեհապետութիւն. — Նախարարութիւն, կուսակալութիւն եւ ստորաբաժանմունք. — Պատրիարքարանք. — Պարտք քաղաքացւոց։

Տնտեսագիտական պարզ խօսակցութիւնք. — Արտադրութեան, անոր գործիներուն, անոր տեսակներուն եւ անոր նպաստող պայմանաց վրայ։

### 11էն 13 տարեկան

Գիտանելոյն գիտելիք Օսմանեան օրէնսդրութեան. — Դատարանք, դատավարական եղանակք, տուրծախ, պայմանագրութիւնք, վաճառականական ու կալուածական օրէնք, կտակ, յանցանք եւ պատիժք։

Պատրիարքարան Հայոց. — Պատրիարք եւ Կեդրոնական Վարչութիւն. — Առաջնորդութիւնք եւ Գաւառական Վարչութիւնք. — Թաղական Խորհուրդք եւ Դպրոցական Հոգաբարձութիւնք։

Տնտեսագիտական պարզ խօսակցութիւնք եկամուտի, տոկոսի, թոշակի, դրամոց, վարկի ու դրամատան, խնայողական սնտուկի, ապահովագրութեան, գործակցական ընկերութեանց, պէտքի ու սպառման վրայ։

## Գ.

## Տարրական Թուաբանութիւն

### 7էն 9 տարեկան

Թուոց արտասանութիւնը եւ գրութիւնը. 1 էն մինչեւ 1000 (գրուած թիւը կարդալ, ըսուած կամ ուզուած թիւը գրել)։

Մտաւոր հաշիւ. — Չորս գործողութիւնք առարկայից վրայ՝ նախ 1 էն 10, յետոյ 1 էն 20, եւ յետոյ 1 էն 100 թուոց մէջ սահմանափակ։

Ցուցման եւ բազմապատկութեան աղիւսակաց ուսում։

Գրաւոր հաշիւ. — Ամբողջական թուոց վրայ (1—1000) յաւելում, բարձում, բազմապատկութիւն եւ բաժանում՝ յաջորդաբար եւ պարզայից ու վարժութեանց աստիճանեալ դժուարութեամբք. անոնց ընդհանուր կանոնները։

Տղոց ընտանի նիւթոց վրայ բերանացի ու գրաւոր խնդիրք եւ խնդրոց ու կատարուած գործողութեանց վրայ պատճառաբանութեանց վարժութիւնք. — Պարզ գաղափար կոտորակի։

Չափի, կշռոյ եւ դրամոց եւ անոնց ստորաբաժանմանց ու բազմապատիկներուն նախնական ծանօթութիւնք. (մէտր, կանգուն, կրամ, տրամ, լիտրա, ֆրանք, ղրուշ։

Թուաբանական նշանաց ծանօթութիւն եւ գործածութիւն։

### 9էն 11 տարեկան

Որ եւ է ամբողջական թուոց արտասանութիւնն եւ գրութիւնը։

Որ եւ է ամբողջական թուոց չորս գործողութիւնք եւ անոնց ընդհանուր կանոնք։

Ընդհանուր գաղափար կոտորակաց վրայ. — Գործածական չափուց, կշռոց, դրամոց եւ ժամանակի բաժանմունք։

Տասն թուոց չորս գործողութիւնք եւ անոնց ընդհանուր կանոնք։

Տասնորդական կոտորակք. — Տասնորդական կոտորակաց արժէքը գտնել. — Անոնց չորս գործողութիւնք։

Վարժութիւնք եւ խնդիրք՝ պատճառաբանութեամբ։

Այս ամէն գործողութեանց վրայ մտաւոր համարողութեան վարժութեանց շարունակութիւն։

Թուաբանական նշաններով ու հաւասարութեամբ ներկայացնել առաջարկուած ու լուծուած խնդիրները։

**11 էն 13 տարեկան**

Վերատեսութիւն եւ վարժութիւնք նախորդ դասընթացքին։

Նախնական թիւք. բաժանականութեան յատկանալիք. վերածումն թուոց իրենց նախնական արտադրչաց, մեծագոյն հասարակ բաժանող, փոքրագոյն հասարակ բազմապատիկ։

Հասարակ կոտորակք. — Յատկութիւնք, պարզմունք եւ չորս գործողութիւնք նոցա։

Հասարակ կոտորակաց արժէքը գտնել։

Հասարակ կոտորակները տասնորդականաց եւ տասնորդականները հասարակաց վերածել։

Մէդրական դրութիւն. — Տասնորդական չափուց, կշռոց եւ դրամոց բաղդատութիւնն ուրիշ գործածական, տեղական եւ այլ չափուց, կշռոց եւ դրամոց հետ, եւ անոնց վերաբերեալ հաշիւներ։

Համեմատութիւնք. — Պարզ եւ բաղադրեալ երեքի կանոն, եւ անոր կիրառումը տոկոսի, զեղչի, համեմատական բաշխման, միջնոց եւ այլն խնդրոց լուծման։

Միութեան կանոնի կիրառում խնդրոց լուծման։

Կիրառմունք բոլոր կանոնաց։ (Վարժութիւնք եւ խնդիրք. պատճառաբանեալ լուծում)։

Արագահաշուոյ եղանակք մտաւոր ու գրաւոր հաշուոց համար։

Տոմարակալութեան առաջին ծանօթութիւնք. — Առեւտրական գիտելիք։

## 10.

## Տարրական գործնական երկրաչափութիւն

**7 էն 9 տարեկան**

Այլ եւ այլ տեսակ գծերը (ուղիղ, բեկեալ, կոր, ուղղաձիգ, հորիզոնական, խոտոր, զուգահեռական, ուղղահայեաց), այլ եւ այլ տեսակ անկիւնները (ուղիղ, սուր եւ բութ) եւ ամենէն տարրական կանոնաւոր ձեւերը (եռանկիւն, քառակուսի, ուղղանկիւն քառանկիւն, տարանկիւն, բոլորակ) ճանչնալ, եւ գծել՝ արձակ ձեռքով, տակաւ վարժուելով (սեւ տախտակի վրայ) երկրաչափական գործեաց գործածութեան։

*Ուղիղ գծեր եւ անկիւններ չափել. — Ուղիղ գծերը հաւասար մասերու բաժնել. — Երեք մեկուսութիւնք.*

*Երկրաչափական հաստատնոց (խորանարդ, զուգահեռոտն, բուրգ, գլան, կոն եւ գունտ) վրայ ծանօթութիւն տեսլար առարկայից միջոցաւ.*

*Աչքով միայն մեծութիւններ չափելու եւ բաղդատելու յաճախակի վարժութիւնք, ինչպէս նաեւ հեռաւորութեանց մերձաւոր գնահատում եւ մեղրական չափով բացատրութիւն.*

**9 էն 11 տարեկան**

*Վարժութիւն երկրաչափական գործեաց (քանակ, կարկին, ուղղանկիւնագիծ, անկիւնաչափ) գործածութեան, սեւ տախտակի եւ թղթի վրայ.*

*Տաւալ, մակերեւոյթ, գիծ, կէտ. — Այլ եւ այլ տեսակ գծեր. — Անոնց գծումը. — Յաւելում եւ բարձում գծերու. — Չափում ուղիղ գծերու. — Ուղղահայեացները գծել. — Զուգահեռականներու գծում.*

*Անկեանց տեսակներն իրարու վերաբերմամբ (առընթերակից, յաւելուածական, լրացուցիչ համադիր, հակադիր). կիսող. զուգահեռականներով եւ հատանողով մը կազմուած անկիւններ. Գծում, չափում եւ բաժանում անկեանց.*

*Բազմանկիւնք. — Եռանկեանց եւ քառակողմանց տեսակները. անոնց գլխաւոր յատկութիւնները. անոնց գծումը, անոնց տարածութեան չափը.*

*Շրջանակ եւ բոլորակ. — Շառաւիղ, տրամագիծ, լար, աղեղ, նետ, հատանող, շօշափող, հատուած, հատուածող, պսակ.*

*Շրջանակ գծել, ատրճաններ՝ հաւասար մասերու բաժնել, շօշափող ու հատանող քաշել, կանոնաւոր բազմանկիւններ գծել.*

*Գոյծնական ծանօթութիւնք խորանարդի, աղոցակի, բուրգի, գլանի, գունտի եւ անոնց հիմնական յատկութեանց վրայ. Զանոնք գծել սեւ տախտակի ու թուղթի վրայ. խաւաքարտով շինել.*

**11էն 13 տարեկան**

*Պիտանեգոյն տարերք մակարդակ երկրաչափութեան. (գործնական կիրառութիւն ունեցող տեսութիւնք եւ ապացոյցք). Տաւալներու չափը.*

(*Մանչերու համար*)

*Կիրառութիւն անդաչափութեան պարզագոյն գործողութեանց.*

*Հարթաչափութեան* (nivellement) *վրայ գաղափար.*

# 11.

## Տարերք բնական գիտութեանց եւ նոցին կիրառմունք յառողջապահութեան, յերկրագործութեան եւ ի ճարտարութեան

**7 էն 9 տարեկան**

*Իրագիտական դասք աստիճանեալ. — Մարդ, կենդանիք, տունկք, հանքեր ու բնական երեւոյթներու գիտողութիւն, պարզ բացատրութեամբք.*

*Ամենօրեայ գործածութեան ու պէտքի վերաբերեալ իրաց նախնական նիւթերուն ու անոնց ստացման ու պատրաստութեան վրայ պարզ ծանօթութիւնք. (ուտե-*

լիք, հագնելիք, վառելիք, գեղանիւթք, շինուածանիւթք, կահ կարասիք, թուղթ, գրիչ եւ գիրք, դրամք, արուեստական գործիք)։

Դպրոցին պարտէզին մէջ պարտիզպանական փոքրիկ աշխատութիւնք եւ ծանօթութիւնք։

Հաւաքածոյ բնապատմական առարկայից՝ աշակերտաց ձեռքով, մանաւանդ դըպրոցական պտոյտներու ատեն։

### 9էն 11 տարեկան

Բնական գիտութեանց յոյժ տարրական ծանօթութիւնք։

Մարդ. — Գլխաւոր մասունք մարդկային մարմնոյ եւ գաղափար մը կենաց գըլխաւոր պաշտօններուն վրայ։

Կենդանիք. — Ծանօթութիւնք մեծ բաժանմանց եւ ողնայարաւորաց դասերուն վրայ, մէն մի խումբին կենդանի մը տիպ առնելով։ Ընտանի եւ վայրի, օգտակար եւ վնասակար անասուններ։

Բոյսք. — Մի քանի տիպերու վրայ ուսումնասիրութիւն բոյսին գլխաւոր գործարանաց. — Ծանօթութիւն բուսական մեծ բաժանմանց. — Օգտակար եւ վնասակար բոյսերը ցոյց տալ (մանաւանդ դպրոցական պտոյտներու ատեն)։

Քարեր եւ մետաղներ. — Կարծր եւ կակուղ քարի տեսակներ. Թանկագին քարեր. — Գլխաւոր մետաղներ ու անոնց գործածութիւնք։

Մարմնոց երեք վիճակները։

Ծանօթութիւնք ի վերայ օդոյ, ջրոյ ու այրման։ — Որոտում եւ կայծակ։

Ջեռուցման եւ լուսաւորութեան զանազան եղանակք եւ նիւթք։

Փորձառական փոքրիկ ապացուցմունք։

Ընթերցմանց, իրագիտական դասուց եւ պտուտից առթիւ ծանօթութիւնք հողոյ գլխաւոր տեսակաց, պարարտացուցիչ նիւթոց, հողագործական աշխատութեանց եւ գործեաց վրայ։

### 11էն 13 տարեկան

Ծանօթութիւնք բնական գիտութեանց. — Նախորդ դասընթացքին վերատեսութիւնն ընդլայնմամբ։

Նախնական ծանօթութիւնք. — Անկենդան ու կենսաւոր մարմինք եւ անոնց որոշիչ հանգամանք. — Կենսաւոր էակաց բաժանում. — Կազմութիւն կենդանեաց։

Մարդ. Ծանօթութիւնք մարդկային կմախքին, մարսողութեան, արեան շրջանի, շնչառութեան եւ շարժման գործարաններուն, ջղային դրութեան եւ զգայարանաց վրայ։

Գործնական խրատք առողջապահութեան. (սննդառութիւն, շնչելի օդ, բնակարան, հանդերձ, լոգանք, մարմնամարզք, քուն եւ հանգիստ, առողջապահութիւն զգայարանաց. (ալքոլի, ծխախոտի, եւայլն զեղծմանց վնասները։)

Կենդանիք. — Դասակարգութեան մեծ գծեր. (ընդհանուր հանգամանք, դասք եւ գլխաւոր տեսակք)։ — Օգտակար կենդանիք (ընտանի, որսի մուշտակաւոր անասունք. — Ջուկեր, միջատք, մարդուն բնական օժանդակները). — Վնասակար կենդանիք։

Բոյսք. — Տունկին էական մասունք. — Գլխաւոր խումբք. — Օգտակար բոյ-

սերը · (սննդեան, բուժական, եւայլն տունկք) վնասակար բոյսեր ։ — Բուսաքաղութիւն (herborisation)։

ՀաՆՔ. — Համառօտ գիտելիք հողագնտին կազմութեան, ժայռերու, բրածոյներու, մետաղներու, թանկագին քարերու, այրելի հանքային նիւթոց, վարելի հողին ու անոր տեսակներուն վրայ · — տեղական օրինակներ ։

Ուսումնական պտոյք եւ փոքրիկ հաւաքածոյից կազմութիւն ։

Նախագիտելիք բնագիտութեան. — Մանրութիւն, կշռորդ եւ լծակ, հեղուկներու եւ կազերու յատկութիւնք, մթնոլորտային ճնշում եւ ծանրաչափ, ջրհան եւ օդապարիկ ։

Տարրական ծանօթութիւնք եւ դիւրագոյն փորձք ջերմութեան, հալման եւ գոլորշիացման, ելեքտրականութեան եւ մագնիսականութեան, ձայնի, լուսոյ, հայելեաց եւ ոսպնակերպ ապակեաց վրայ. (ջերմաչափ, շոգեշարժ մեքենայ, շանթարգել, կողմնացոյց, ելեքտրական հեռագիր, հեռաձայն, մանրադէտ, հեռադէտ, մոգական լապտեր, եւայլն)։

Նախագիտելիք բնալուծութեան. — Գաղափար պարզ եւ բաղադրեալ մարմնոց. — Գլխաւոր մետաղակերպք (թթուածին, ջրածին, բնածուխ, ծծումբ, փոսփոր եւ քլոր)· գործածական մետաղք (երկաթ, զէնկ, պղինձ, անագ, կապար, ալիւմինիոմ, արծաթ, ոսկի, լմնոսկի, սնդիկ), եւ անոնց կարեւորագոյն բաղադրութիւնք (թթուներ, խարիսխներ, չէզոք մարմիններ եւ աղեր). գլխաւոր յարազօդք (արոյր, անագապղինձ եւայլն սնդկազօդք)։ — Գործարանաւոր բնալուծութեան ամենէն պիտանեգոյն ծանօթութիւնք ։ (Գործարանաւոր թթուներ, ալքոլիններ եւ չէզոք բաղադրութիւնք · քացախի, շաքարի, ալքոլի, օճառի, մոմի, թուղթի պատրաստութիւնք)։

Աւելի կարգաւորեալ ծանօթութիւնք հողագործական աշխատութեանց, ճահիճներու ցամաքեցուցման, բնական եւ արուեստական պարարտութեանց, ցանքի ու քաղի, ընտանի կենդանեաց եւ հողագործական հաշուակալութեան վրայ ։

Պարտիզամշակութեան գիտելիք. — Երկրին օգտակարագոյն բոյսերը շատցնել. — Գլխաւոր միջոցներ · — Ծառամշակութեան գիտելիք, կարեւորագոյն պտուաստք

## 12.

## Տարերք գծագրութեան

### 7էն 9 տարեկան

Վարժութիւնք երկրաչափական գծագրութեան ։

Զարդական գծագրութեան առաջին սկզբունք · — Շրջանք, կանոնաւոր բազմանկիւնք, աստղաձեւ, վարդաձեւ զարդեր ։

### 9էն 11 տարեկան

Գործածական երկրաչափական կոր գծեր. ձուաձեւ, պարուրաձեւ, եւայլն ։ Բոյսերէ առնուած կոր գծեր · (ցողուն, տերեւ, ծաղիկ)։

Թեթեւօրէն կարկառուն հարթ զարդանկարներ ներկայացնող գաճերու վրայէն ընդօրինակութիւն ։

Երկրաչափական հաստատնոց եւ գործածական պարզ առարկայից երկրաչափա-

կան գծապատկերը, եւ նախ միայն գծերով, յետոյ ստուերներով հեռապատկերումը ։

**11 էն 13 տարեկան**

Նախնական ծանօթութիւնք երկրաչափական գծապատկերի եւ տարերք հեռապատկերի ։

Տպածոյ եւ կարկառուն օրինակաց վրայէ գծել զուտ երկրաչափական զարդեր. (ձուաձեւ, սրտաձեւ, ատամնաձեւ զարդք, դէպք (moulûre), եւայլն) ։

Տպածոյ եւ կարկառուն օրինակաց վրայէ գծել զարդեր, որոց տարերք առնուած են բոյսերէ (տերեւ, ծաղիկ, պտուղ, արմաւենեակ (polmesse), ոստիկ (rinceau), եւն) ։

Գաղափար մը (սեւ տախտակի վրայ) ճարտարապետական ոճերու մասին ։

Գծագրութիւն մարդկային գլխոյ, իւր մասունք, համեմատութիւնք ։

Լավիի սկզբունք տափակ գոյներով ։

Գծագրութիւն մակերեւոյթներու երկրաչափական զարգանկարուց (սալայատակի, տախտակամածի, պատուհանաց ապակիներու, դռներու, ձեղուններու) ։ — Չինական մելանով եւ ներկով գունազարդել (lavis) այդպիսի գծագրութիւններ ։

Երկրաչափական հաստատուն մարմիններու ու պարզ առարկաներու երկրաչափական գծապատկերը, չափերով հանդերձ (փայտակերտք, սովորական կահք, դարբնածք, եւայլն) ։

Նիւթոց տեսակը յայտնելու համար լավիի գործածութիւն ։ — Ծառակազմերու եւ քարաքէններու լավի ։

## 13.

## Երաժշտութիւն

**7 էն 9 տարեկան**

Պարզ երգեր, լսողութեամբ ուսանելի ։

Եկեղեցական մէկ քանի դիւրին երգեցողութիւնք ։

**9 էն 11 տարեկան**

Մէկ եւ երկու ձայնով երգեր, լսողութեամբ ուսանելի ։

Նախնական տարերք ձայնագրութեան. — Նօտք, հնագոյն. — Սօլի բանալին, ձայնագրութեան առաջին վարժք, ձայնի տեւողութիւնք եւ նշանակք, լռութիւն եւ նշանակք. երկամանակ, եռամանակ եւ քառամանակ չափեր ։ Նօտերու ընթերցումն տեւողութեամբ եւ չափահարութեամբ ։

Պատարագի եղանակներ. — Առաւօտ լուսոյ ։

**11 էն 13 տարեկան**

Շարունակութիւն միջին դասընթացքին ։

Ձայներգութեան վարժութիւնք ։ Սօլի եւ ֆաի բանալիները ։

Ձայնարան մաժօր, ձայնարան մինօր. ձայնափոխ նշաններ ։

Գլխաւոր մաժօր եւ մինօր ձայնարանք (gammes) ։

Վարժութիւնք ընթերցանութեան եւ գրուցագրութեան. — Ձայնագրեալ հատուածոց (մէկ եւ երկու ձայնով) խմբերգութիւնք ։

Տօնական Շարականաց երգեցմունք ։



## ԲԱՐՈՅԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

### 1.

### Կրօնական ուսում

**7 էն 9 տարեկան**

*Աստուածաշնչական պատկերներու վրայ բերանացի պատմել ու պատմել տալ Հին եւ Նոր Կտակարանաց եւ Քրիստոնէութեան Հայոց մէջ հաստատութեան պատմութիւններուն ինչ ինչ մասերը, առանց պատմական կապակցեալ կարգ մը պահելու անոնց մէջ, ընտրելով այնպիսի դէմքեր ու իրողութիւններ որք խօսին մանաւանդ տղոց երեւակայութեան ու սրտին, եւ բարոյական տպաւորութիւն մը յառաջ բերելու մտադիր ըլլալով։*

*Ուսուցիչը պիտի կրնայ կանգ առնուլ հետեւեալ գլխաւոր կէտերուն վրայ։*

1. *Նախածնողք. Կայէն եւ Աբէլ. Նոյ եւ Ջրհեղեղ. Աբրահամու զոհը. Իսահակ եւ Ռեբեկա. Յակոբ եւ Եսաւ. Յովսէփ գեղեցիկ. Մովսէս եւ Կարմիր ծովու անցքը. Յեփթայէ. Սամսոն. Սամուէլի մանկութիւնը. Տովբիթ. Հռութ. Դաւիթ եւ Գողիաթ. Դաւիթ եւ Սաւուղ. Սողոմոնի դատաստանը. Գոթողիա եւ Յովաս. Յուդիթ. Նաբուգոդոնոսոր եւ երեք մանկունք. Եսթեր։*

2. *Յիսուսի ծնունդը. — Եգիպտոս փախուստը եւ Բեթղեհեմի կոտորածը. — Սիմէոն ծերունի. — Յիսուս երկոտասանամեայ ի տաճարին. — Յիսուսի մկրտութիւնը. — Յիսուս եւ մանուկները. — Նայինի պատանին. — Կանայ հարսնիքը. — Յիսուսի խօսած առակները (Անառակ որդին, Տնտեսը, Մեծատունն ու աղքատը). — Յիսուս յԵրուսաղէմ. — Ղազարու յարութիւնը. — Յիսուսի ընթրիքը. — Ոտնալուայ. — Յուդայի մատնութիւնը. — Յիսուսի չարչարանքը եւ խաչելութիւնը. — Յիսուսի յարութիւնը եւ համբարձումը։*

3. *Յիսուս եւ Աբգար. — Աբգար եւ Թադէոս. — Սանդուխտ կոյս. — Տրդատ եւ Գրիգոր Լուսաւորիչ. — Հռիփսիմեան կուսանք։*

*Հայր մերը ի բերան սորվեցնել, տղուն մտքին յարմար բացատրութեամբ, եւ զայն առնուլ իբրեւ հիմ կրօնից՝ պարզ գաղափար մը տալու համար։*

**9 էն 11 տարեկան**

*Սրբազան պատմութիւն. — Աւելի կանոնաւոր կարգով մը, բայց համառօտիւ, Հին եւ Նոր Կտակարանաց պատմութիւնները։*

*Քրիստոնէութեան Հայոց մէջ հաստատութեան պատմութիւնը. — Հայաստանեայց Եկեղեցին եւ իւր սուրբերը։*

*Աւետարանի պատուէրները։*

*Քրիստոնեայ Եկեղեցւոյ գլխաւոր տօներու բացատրութիւնը։*

**11 էն 13 տարեկան**

*Սրբազան պատմութիւն. — Վերատեսութիւն միջին դասընթացքի։*

*Եկեղեցւոյ առաջին երեք ժողովները. Քրիստոսի Եկեղեցւոյ ամենէն նշանաւոր հայրերը. — Հայ եկեղեցւոյ մեծանուն Հայրապետք եւ Թարգմանիչք։*

*Քրիստոնէութեան գլխաւոր բաժանումները։*

Ընթերցում եւ բացատրութիւն Աւետարանի. (Լերան քարոզը, Առակները, Յիսուսի վերջին շաբաթը)։

Համառօտ քրիստոնէական վարդապետութիւն. (Հաւատալիք Եկեղեցւոյ, Խորհուրդք Եկեղեցւոյ, քրիստոնէական առաքինութիւնք եւ եօթն մահացու մեղքերը)։

## 2.

## Բարոյական կրթութիւն

### 7էն 9 տարեկան

Ընթերցուածոց (բարոյական եւ կրօնական պատմութիւնք, առակք, խրատական խօսք, փոքրիկ բանաստեղծութիւնք) եւ բարոյական իմաստ մ'ունեցող պատկերներու բացատրութեանց միջոցաւ եւ ընտանեկան խօսակցութեամբք՝ տղոց մէջ բարւոյ ու չարի զանազանութեան եւ պարտականութեան զգացումը պայծառացնել եւ բարութեան բնական գրգռումներն ու սէրը զօրացնել։ — Սրտին միջոցաւ կրթել։

Բարոյական կրթութեան գործնական եղանակներ ի գործ դնել.

1. Տղոց անհատական բնաւորութեանց դիտողութենէն օգուտ քաղելով՝ իւրաքանչիւրին բարի տրամադրութիւնները քաջալերելու եւ յոռիները քաղցրութեամբ ուղղելու համար։

2. Դաստիարակն իւր իսկ վարմանց վրայ հսկելով եւ դասարանին կառավարութեան մէջ ուղիղ, բարեսիրտ ու ազնիւ ընթացք մ'ունենալով՝ գործնապէս տալու համար տղոց իւր անձին վրայ արդարութեան, սիրոյ, անկեղծութեան ու քաղաքավարութեան օրինակները։

3. Օգտուելով դպրոցական կեանքի դէպքերէն, այս կամ այն տղուն գովելի կամ պարսաւելի մէկ վարմունքէն, նոյն իսկ իրենց բարոյական զգացման ու դատաստանին կոչում ընելու եւ դէպքը բարոյական դասի մ'առիթ ընելու համար։

4. Օգտուելով տղոց ծանօթ արտաքին եղելութիւններէ եւ օրինակներէ՝ մոլութեանց եւ յոռի կրից (ծուլութիւն, շռայլութիւն, որկրամոլութիւն, գինեմոլութիւն, ծխամոլութիւն, եւայլն) տխուր հետեւանքները զգացնելու եւ անոնց մասին պժգանք ազդելու, ինչպէս եւ առաքինութեանց եւ ազնիւ յատկութեանց (աշխատասիրութիւն, ճշմարտախօսութիւն, ընտանեսիրութիւն, ազգասիրութիւն, ընկերսիրութիւն, եւայլն) նկատմամբ համակրութիւն եւ փափաք ներշնչելու համար։

5. Նոյն իսկ աղքատի, կարօտեալի ու հիւանդի գործնականապէս օգնելու առիթներ ներկայացնելով տղոց ու յայց տանելով զանոնք բարեգործական հաստատութեանց՝ անոնց մէջ գթութեան ու անձնուիրութեան զգացումները մշակելու համար։

6. Եւ վերջապէս բնութեան մեծ եւ գեղեցիկ տեսարանաց առջեւ դնելով զանոնք՝ անոնց հիացումը գրգռելու եւ կրօնական զգացումը մշակելու համար։

### 9էն 11 տարեկան

Նախորդ եղանակաց եւ միջոցներուն կիրառումը, (խօսակցութիւնք, ընթերցմունք եւ բացատրութիւնք, գործնական եղանակներ), բարւոյն ծանօթութիւնն ու զգացումը մշակելու համար աշակերտաց մէջ։

Դասուց եւ ընթերցմանց նիւթերն այնպէս ընտրել ու չափաւորել որ ուսուցիչը

*տարուան ընթացքին մէջ առիթ ունեցած ըլլայ հետեւեալ ծրագրին ամէն կարեւոր կէտերն իր բացատրութեանց մէջ չօշափելու ։*

*Տղան ընտանեաց մէջ* · — 1 · Պարտաւորութիւնք առ ծնողս եւ մեծ-ծնողս · — *Հնազանդութիւն , յարգանք , սէր , երախտագիտութիւն ։ — Օգնել ծնողաց իրենց աշխատութեանց եւ հիւանդութեանց մէջ . — Խնամել զանոնք իրենց ծերութեան օրերուն ։*

2. Պարտաւորութիւնք եղբարց եւ քերց . — *Փոխադարձ սէր , մեծերուն կողմանէ փոքրերու պաշտպանութիւն եւ բարի օրինակ ։*

3. Պարտիք առ ծառայս . — *Մարդավարութիւն , բարութիւն անոնց նկատմամբ ։*

*Տղան դպրոցի մէջ . — Ցարատեւութիւն , աշխատասիրութիւն , կանոնապահութիւն , բարեկրթութիւն · — Պարտք առ դաստիարակս ։ — Պարտք առ ընկերս ։*

*Տղան քաղաքի մէջ . — Պարտք առ ազգն , առ երկիրն ( հնազանդութիւն օրինաց եւ իշխանութեան , մասնակցութիւն հանրային ծախուց , նպաստ հանրային օգտին ) ։*

4. Պարտք առ անձն . — Մարմինը . — *Մաքրութիւն , ժուժկալութիւն , բարեխառնութիւն , գինովութեան վտանգները · — Մարմնամարզ ։* 2. Ինչք եւ ստացուածք. *— Տնտեսութիւն , պարտքէ խուսափել , խաղամոլութեան աղետալի հետեւանքները , դրամի եւ շահու մոլութենէն զգուշանալ , չայլութիւն , ագահութիւն ։ Աշխատութիւն . իր հարկաւորութիւնը , իր օգուտները , իր բարոյական ազդեցութիւնը , ձեռական աշխատութեան ազնուութիւնը ։*

4. Հոգին — *Ճշմարտախօսութիւն եւ անկեղծութիւն · երբեք չստել ։ Անձնական արժանապատուութիւն , յարգել իր անձը .— Համեստութիւն . ճանչնալ իր թերութիւնները , զգուշանալ հպարտութենէ եւ մնապաշտութենէ · — Տգիտութենէ եւ ծուլութենէ ամչնալ . — Արիութիւն վտանգաց եւ դժբախտութեան մէջ · համբերութիւն . Նախաձեռնութեան ոգի · — Բարկութեան վտանգները ։*

Գութ առ կենդանիս · — *Չչարչարել զանոնք ընդունայն ։*

2. Պարտք առ այլ մարդիկ · — *Արդարասիրութիւն եւ գութ · ( Մի՛ ընէք ուրիշին ինչ որ չէք ուզեր որ ուրիշը ձեզ ընէ . — Ըրէք ուրիշին ինչ որ կ'ուզէք որ ուրիշը ձեզ ընէ ) ։*

*Զգուշանալ ուրիշին կեանքին , անձին , ինչքին , համբաւին . — Բարութիւն , եղբայրութիւն ։ Յարգել ուրիշին հաւատքը ( ներողութեան ոգի ) ։*

6. Պարտք առ Աստուած ։ — *Ճանչնալ , սիրել եւ պաշտել զԱստուած . — Առ Նա յայտնել մեր սէրն ո՛չ միայն արտաքին պաշտամամբք , այլ եւ , ու մանաւանդ , առաքինի եւ աստուածահաճոյ գործովք ։*

Ծանօթ · Ա. — *Այս բոլոր նիւթերուն վրայ կը խօսի ու կը խօսակցի դաստիարակը՝ մեկնելով խղճմտանքի , բարոյական օրինաց ու պարտականութեան գոյութենէն եւ կոչում ընելով տղոց բարոյական-բնական զգացմանց , պարտականութեան եւ պատասխանատուութեան գաղափարին , առանց զայնս տեսականապէս ապացուցանել ջանալու ։*

*Բ. — Այս ծրագրի նիւթոց չատը պիտի կրնայ միանալ կրօնական դասին նիւթոց հետ ։*

**11 էն 13 տարեկան**

*Խօսակցութիւնք , ընթերցմունք , բացատրութիւնք եւ գործնական եղանակք ,*

որպէս նախորդ երկու դասընթացից մէջ: — Բաց աստի այս դասընթացքը պիտի պարունակէ դասերու կանոնաւոր շարքի մը մէջ՝ բարոյական ընդհանուր սկզբանց եւ մեր այլ եւ այլ կարգի եւ ի մասնաւորի ընկերական պարտականութեանց ուսման տարրական ընթացք մը, ըստ հետեւեալ ծրագրին.

**Ընդհանուր սկզբունք.** — Մարդուն բարոյականութեան նկարագիրք. (Բարոյական-հոգեբանական իրողութիւնք. բարոյական գիտակցութիւն կամ խղճմտանք. պատասխանատուութիւն. դատաստան արժանեաց եւ չարժանեաց. վաւերացում բարոյական օրինաց. վարձատրութիւնք եւ պատիժք.

Բարոյագիտութեան հիմնական ծանօթութիւնք. — Բարին եւ պարտականութիւնը. զանազանութիւն հաճոյից եւ բարւոյն, չահու եւ պարտականութեան, դրական կամ գրեալ ու բարոյական օրինաց, առաքինութեան եւ մոլութեան.

**Անհատական բարոյական.** — Պարտականութիւնք մարդուն առ անձն իւր (առ հոգին եւ առ մարմինն). — Պարտականութիւնք մարդոյն կենդանեաց եւ անկենդան բնութեան հետ իւր առընչութեանց մէջ.

**Ընկերական բարոյական.** — Ա. Ընտանիք. — Պարտականութիւնք ծնողաց եւ որդւոց, քերց եւ եղբարց, փոխադարձ պարտիք ամուսնոց. պարտիք տերանց եւ ծառայից առ միմեանս. — Ընտանեկան պատուասիրութիւն.

Բ. Ընկերութիւն. — Մարդկային ընկերութեան հարկաւորութիւնն եւ բարիքները. — Արդարութիւն, պայման ամէն ընկերութեան. — Մարդկային համերաշխութիւն եւ եղբայրութիւն.

1. Արդարութեան պարտականութիւնք. — Յարգանք մարդկային կեանքին եւ պատուոյն. — Յարգանք այլոց պատուոյն եւ համբաւին. — յարգանք այլոց զգայնութեան. քաղաքավարութիւն. — Յարգանք այլոց իմացականութեան. — Ներողութիւն. (յարգանք կարծեաց եւ դաւանութեանց).

2. Պարտականութիւնք սիրոյ կամ եղբայրութեան. — Սիրոյ զանազան աստիճանք, բարեացակամութիւն, հաճոյակատարութիւն, ձեռնտուութիւն, բարերարութիւն, անձնուիրութիւն.

Գ. Ազգն ու երկիրը. — Հնազանդութիւն օրինաց եւ իշխանութեան. — Հարկ, նըպաստ հանրային օգտին եւ զարգացման. — Անձնուէր մասնակցութիւնք եւ յանձնառութիւնք վարչական պաշտամանց ու հանրօգուտ ծառայութեանց. — Իրաւունք որ կը համապատասխանեն սոյն պարտուց. — Կեանք, պատիւ եւ սեփականութիւն.

**Կրօնական բարոյական.** — Պարտաւորութիւն առ Աստուած. — Մեր առ Աստուած պարտականութեանց առաջինն է՝ պահել բարոյական օրէնքը եւ գործել առաքինութիւնը.

---

Պատրաստեալ յՈւսումնական Խորհրդոյ եւ մատուցեալ ի վաւերա
Ազգային Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովոյ:

*Ուսումնական Խորհրդոյ*

Ատենադպիր — ՊՕՂՈՍ Գ. ՔԷՐԷՍՏԷՃԵԱՆ

Ատենապետ — ՏՕՔԹ. ՎԱՀՐԱՄ Ց. ԹՈՐԳՈՄԵԱՆ

1 Մայիս 1897 Կ. Պոլիս

Ազգային Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովն 1897 Մայիս 15ի նստին սոյն Կրթական Ծրագիրն ընդունած եւ հաստատած լինելով՝ ըստ այնմ կը յանձնա րեմք ի գործադրութիւն:

23 Մայիս 1897
Պատրիարքարան Հայոց
Կ. Պոլիս



ՊԱՏՐԻԱՐՔ Կ. ՊՈԼՍՈՅ
ՄԱՂԱՔԻԱ

